ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 16

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 27-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ





## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ XXVII ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՆԱԽԱԳԱՀ ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՄՈՍԿՎԱՅԻ ՍՈՎԵՏԻ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ ՄՈՍԿՎԱ ՔԱՂԱՔԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍՆԱԿՑՈՒԹՅԱՄԲ 1944 ԹՎԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 6-ԻՆ

Ընկերնե՛ր։

Այսօր սովետական մարդիկ տոնում են մեր երկրում սովետական ռևոլյուցիայի հաղթանակի 27-րդ տարեդարձը։

Չորրորդ անգամ մեր երկիրը սովետական ռևոլյուցիայի տարեդարձը դիմավորում է գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող Հայրենական պատերազմի պայմաններում։

Դա, իհարկե, չի նշանակում, որ պատերազմի չորրորդ տարին իր հանրագումարներով չի տարբերվում պատերազմի նախորդ երեք տարիներից։ Ընդհակառակը, նրանց մեջ արմատական տարբերություն կա։ Եթե պա-

տերազմի երկու նախորդ տարիները գերմանական զորքերի հարձակման և մեր երկրի խորքը նրանց առաջխաղացման տարիներ էին, երբ Կարմիր Բանակը հարկադրված էր պաշտպանողական մարտեր մղել, իսկ պատերազմի երրորդ տարին արմատական բեկման տարի էր մեր ռազմաճակատում, երբ Կարմիր Բանակը ծավալեց հարձակողական հուժկու մարտեր, մի շարք վճռական մարտերում ջախջախեց գերմանացիներին, գերմանական զորքերից մաքրեց սովետական հողի երկու երրորդը և նրանց ստիպեց անցնել պաշտպանության, ըստ որում Կարմիր Բանակը դեռևս շարունակում էր գերմանական զորքերի դեմ պատերազմ մղել մեկ ընդդեմ մեկի, առանց դաշնակիցների կողմից լուրջ աջակցության, ապա պատերազմի չորրորդ տարին եղավ սովետական բանակների և մեր դաշնակիցների բանակների վճռական հաղթանակների տարի ընդդեմ գերմանական զորքերի, երբ գերմանացիները, հարկադրված լինելով այս անգամ պատերազմ մղել երկու ճակատում, ետ շպրտվեցին դեպի Գերմանիայի սահմանները։

Այս բոլորի հետևանքով անցած տարին ավարտվեց գերմանական զորքերի վռնդումով



Սովետական Միության, Ֆրանսիայի, Բելգիայի, միջին Իտալիայի սահմաններից և պատերազմական գործողությունների տեղափոխումով Գերմանիայի տերիտորիան։

## 1. ԳԵՐՄԱՆԻԱՆ ԵՐԿՈՒ ՃԱԿԱՏԻ ԱՔՑԱՆԻ ՄԵՋ

Կարմիր Բանակի այս տարվա վճռական հաջողությունները և սովետական հողի սահմաններից գերմանացիների վռնդումը կանխորոշված էին մեր զորքերի կողմից գերմանական զորքերին հասցված մի շարք խորտակիչ հարվածներով, որոնք սկսվեցին դեռևս այս տարվա հունվարին և այնուհետև ծավալվեցին ամբողջ հաշվետու տարվա ընթացքում։

Առաջին հարվածը մեր զորքերը հասցրին այս տարվա հունվարին Լենինգրադի և Նովգորոդի մոտ, երբ Կարմիր Բանակը խորտակեց գերմանացիների երկարատև պաշտպանությունը և նրանց ետ շպրտեց Մերձբալթիկա։ Այդ հարվածի արդյունքը եղավ Լենինգրադի մարզի ազատագրումը։

Երկրորդ հարվածը հասցվեց այս տարվա փետրվար—մարտին Բուգի վրա, երբ Կարմիր Բանակը ջախջախեց գերմանական զորքերին և նրանց ետ շպրտեց Դնեստրից այն կողմը։ Այդ հարվածի հետևանքով Աջափնյա Ուկրաի-

նան ազատագրվեց գերմանա-ֆաշիստական զավթիչներից։

Երրորդ հարվածը հասցվեց այս տարվա ապրիլ—մայիսին Ղրիմի շրջանում, երբ գերմանական զորքերը շպրտվեցին Սև ծով։ Այդ հարվածի հետևանքով գերմանական ճնշումից ազատագրվեցին Ղրիմը և Օդեսան։

Չորրորդ հարվածը հասցվեց այս տարվա հունիսին Կարելիայի շրջանում, երբ Կարմիր Բանակը ջարդեց ֆիննական զորքերին, ազատագրեց Վիբորգն ու Պետրոզավոդսկը և ֆիններին ետ շպրտեց Ֆինլանդիայի խորքը։ Այդ հարվածի հետևանքը եղավ Կարելա-Ֆիննական սովետական ռեսպուբլիկայի մեծ մասի ազատագրումը։

Հինգերորդ հարվածը գերմանացիներին հասցվեց այս տարվա հունիս—հուլիսին, երբ Կարմիր Բանակը գլխովին ջարդեց գերմանական զորքերին Վիտեբսկի, Բոբրույսկի, Մոգիլյովի մոտ և ավարտեց իր հարվածը գերմանական 30 դիվիզիայի շրջապատումով Մինսկի մոտ։ Այդ հարվածի հետևանքով մեր զորքերը· ա) ամբողջովին ազատագրեցին Բելոռուսական սովետական ռեսպուբլիկան, բ) հասան Վիսլային և ազատագրեցին մեզ դաշնակից Լեհաստանի զգալի մասը, գ) հասան Նեմանին և ազատագրեցին Լիտվական սովե-



տական ռեսպուբլիկայի մեծ մասը, դ) անցան Նեմանը և մոտեցան Գերմանիայի սահմաններին։

Վեցերորդ հարվածը հասցվեց այս տարվա հուլիս—օգոստոսին Արևմտյան Ուկրաինայի շրջանում, երբ Կարմիր Բանակը ջարդեց գերմանական զորքերին Լվովի մոտ և նրանց ետ շպրտեց Սանից ու Վիսլայից այն կողմ։ Այդ հարվածի հետևանքով· ա) ազատագրվեց Արևմտյան Ուկրաինան, բ) մեր զորքերը անցան Վիսլան և Վիսլայից այն կողմ հզոր պլացդարմ ստեղծեցին Սանդոմիրից արևմուտք։

Յոթերորդ հարվածը հասցվեց այս տարվա օգոստոսին Քիշնև—Յասսիի շրջանում, երբ մեր զորքերը գլխովին ջարդեցին գերմանա-ռումինական զորքերին և ավարտեցին իրենց հարվածը գերմանական 22 դիվիզիայի շրջապատումով Քիշնևի մոտ, չհաշված ռումինական դիվիզիաները։ Այդ հարվածի հետևանքով· ա) ազատագրվեց Մոլդավական սովետական ռեսպուբլիկան, բ) շարքից դուրս հանվեց Գերմանիայի դաշնակից Ռումինիան, որը պատերազմ հայտարարեց Գերմանիային և Հունգարիային, գ) շարքից դուրս հանվեց Գերմանիայի դաշնակից Բուլղարիան, որը նույնպես պատերազմ հայտարարեց Գերմա-

նիային, գ) մեր զորքերի համար ճանապարհ բացվեց դեպի Հունգարիա՝ Գերմանիայի վերջին դաշնակիցը Եվրոպայում, ե) հնարավորություն բացվեց մեր դաշնակից Հարավսլավիային օգնության ձեռք մեկնելու ընդդեմ գերմանական զավթիչների:

Ութերորդ հարվածը հասցվեց այս տարվա սեպտեմբեր—հոկտեմբերին Մերձբալթիկայում, երբ Կարմիր Բանակը ջարդեց գերմանական զորքերին Տալլինի ու Ռիգայի մոտ և նրանց վռնդեց Մերձբալթիկայից: Այդ հարվածի հետևանքով. ա) ազատագրվեց Էստոնական սովետական ռեսպուբլիկան, բ) ազատագրվեց Լատվիական սովետական ռեսպուբլիկայի մեծ մասը, գ) շարքից դուրս հանվեց Գերմանիայի դաշնակից Ֆինլանդիան, որը պատերազմ հայտարարեց Գերմանիային, դ) գերմանական ավելի քան 30 դիվիզիա կտրվեցին Պրուսիայից և աքցանի մեջ սեղմվեցին Տուկումսի ու Լիբավայի միջև ընկած շրջանում, որտեղ նրանք վերջին քոթակն են ստանում մեր զորքերից: (Երկարատև ծափահարություններ):

Այս տարվա հոկտեմբերին Տիսայի ու Դանուբի միջև Հունգարիայի շրջանում սկսվեց մեր զորքերի իններորդ հարվածը, որի նպատակն է Հունգարիային դուրս բերել պա-



տերազմից և նրան դարձնել Գերմանիայի դեմ: Այդ հարվածի հետևանքով, որը դեռևս չի ավարտված, ա) մեր զորքերը ուղղակի օգնություն ցույց տվին մեր դաշնակից Հարավսլավիային՝ գերմանացիներին վռնդելու և Բելգրադը ազատագրելու գործում, բ) մեր զորքերը հնարավորություն ստացան անցնելու Կարպատյան լեռնաշղթան և օգնության ձեռք մեկնելու մեր դաշնակից Չեխոսլովակյան ռեսպուբլիկային, որի տերիտորիայի մի մասն արդեն ազատագրված է գերմանական զավթիչներից:

Վերջապես, այս տարվա հոկտեմբերի վերջին գերմանական զորքերին հարված հասցվեց Հյուսիսային Ֆինլանդիայում, երբ գերմանական զորքերը դուրս շպրտվեցին Պեչենգայի շրջանից և մեր զորքերը հետապնդելով գերմանացիներին, մտան մեր դաշնակից Նորվեգիայի սահմանները: (Ծափահարություններ):

Ես թվական տվյալներ չեմ բերում այդ գործողությունների հետևանքով հակառակորդի կրած կորուստների՝ սպանվածների ու գերվածների մասին, մեր զորքերի գրաված հրանոթների, տանկերի, ինքնաթիռների, արկերի, գնդացիրների քանակի մասին և այլն: Այդ տվյալները ձեզ պետք է որ հայտնի

լինեն Սովետական Ինֆորմբյուրոյի ամփոփագրերից:

Սրանք են Կարմիր Բանակի հիմնական գործողությունները անցած տարվա ընթացքում, որոնք հանգեցրին գերմանական զորքերի վռնդմանը մեր երկրի սահմաններից:

Այդ գործողությունների հետևանքով ջարդվեց ու շարքից հանվեց գերմանացիների ու նրանց դաշնակիցների մոտ 120 դիվիզիա: Անցյալ տարի մեր ռազմաճակատի դեմ կանգնած 257 դիվիզիայի փոխարեն, որից 207 դիվիզիան գերմանական էր, այժմ բոլոր «տոտալ» ու «գերտոտալ» մոբիլիզացիաներից հետո, մեր ռազմաճակատի դեմ կա ընդամենը գերմանական և հունգարական 204 դիվիզիա, որից գերմանական դիվիզիաների թիվը կազմում է ոչ ավելի քան 180:

Պետք է խոստովանել, որ ներկա պատերազմում հիտլերյան Գերմանիան իր ֆաշիստական բանակով ավելի հզոր, նենգ և փորձված հակառակորդ դուրս եկավ, քան Գերմանիան ու նրա բանակը անցյալ բոլոր պատերազմներում: Դրան պետք է ավելացնել, որ գերմանացիներին այս պատերազմում հաջողվեց օգտագործել համարյա ամբողջ Եվրոպայի արտադրողական ուժերը և իր վասալական պետությունների բավականին զգալի



բանակները: Եվ եթե, չնայած Գերմանիայի համար պատերազմ մղելու այդ բարենպաստ պայմաններին, նա, այնուամենայնիվ, կանգնեց անխուսափելի կործանման եզրին, ապա այդ պետք է բացատրել նրանով, որ Գերմանիայի գլխավոր հակառակորդը՝ Սովետական Միությունը իր ուժով գերազանցեց հիտլերյան Գերմանիային: (Բուռն ծափահարություններ):

Հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմում անցած տարվա ընթացքում նոր մոմենտ պետք է համարել այն փաստը, որ Կարմիր Բանակն այս տարի գերմանական զորքերի դեմ իր գործողությունները կատարում էր ոչ թե միայնակ, ինչպես այդ տեղի էր ունեցել նախորդ տարիներին, այլ մեր դաշնակիցների զորքերի հետ համատեղ: Թեհրանի կոնֆերանսը իզուր չանցավ: Արևմուտքից, արևելքից ու հարավից Գերմանիային համատեղ հարված հասցնելու վերաբերյալ Թեհրանի կոնֆերանսի որոշումը սկսեց իրագործվել զարմանալի ճշտությամբ: Սովետա-գերմանական ռազմաճակատում Կարմիր Բանակի ամառային գործողությունների հետ միաժամանակ դաշնակից զորքերը սկսեցին ներխուժումը Ֆրանսիա և կազմակերպեցին հարձակողական հզոր գործողություններ,

որոնք հիտլերյան Գերմանիային ստիպեցին պատերազմ մղել երկու ճակատում: Մեր դաշնակիցների զորքերն ու նավատորմը կատարեցին իր կազմակերպվածությամբ և թափով պատմության մեջ դեռևս չտեսնված մասսայական դեսանտային գործողություն Ֆրանսիայի ծովափին և վարպետորեն հաղթահարեցին գերմանացիների ամրությունները:

Այսպիսով Գերմանիան սեղմվեց երկու ճակատի աքցանի մեջ:

Ինչպես և պետք էր սպասել, թշնամին չդիմացավ Կարմիր Բանակի ու դաշնակիցների զորքերի համատեղ հարվածներին: Թշնամու դիմադրությունը կոտրվեց, նրա զորքերը կարճ ժամկետում դուրս շպրտվեցին միջին Իտալիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Սովետական Միության սահմաններից: Թշնամին ետ շպրտվեց դեպի Գերմանիայի սահմանները:

Տարակույս չի կարող լինել, որ առանց Եվրոպայում երկրորդ ճակատի կազմակերպման, որն իր վրա է գամել գերմանացիների մոտ 75 դիվիզիա, մեր զորքերը չէին կարողանա այդպիսի կարճ ժամկետում կոտրել գերմանական զորքերի դիմադրությունը և նրանց դուրս շպրտել Սովետական Միության սահմաններից: Սակայն, անտարակուսելի է



նաև այն, որ առանց այս տարվա ամառն Կարմիր Բանակի հարձակողական հզոր գործողությունների, որոնք իրենց վրա գամեցին գերմանական մոտ 200 դիվիզիա, մեր դաշնակիցների զորքերը չէին կարողանա այդպես արագ հաշիվ տեսնել գերմանական զորքերի հետ և նրանց դուրս շպրտել միջին Իտալիայի, Ֆրանսիայի, Բելգիայի սահմաններից:

Խնդիրն այն է, որ Գերմանիան այսուհետև ևս պահվի երկու ճակատի աքցանի մեջ:

Այդ է հաղթանակի բանալին:

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՍԽՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ

Եթե Կարմիր Բանակը կարողացավ հաջողությամբ կատարել իր պարտքը Հայրենիքի հանդեպ և գերմանացիներին դուրս վռնդեց սովետական հողի սահմաններից, ապա նա այդ արեց շնորհիվ այն բանի, որ թիկունքից նրան անձնվիրաբար պաշտպանում էին մեր ամբողջ երկիրը, մեր երկրի բոլոր ժողովուրդները: Սովետական բոլոր մարդկանց՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքը, ինչպես նաև մեր պետական և պարտիական օրգանների ղեկավարող գործունեությունը անցած տարում ըն-

թանում էր «ամեն ինչ ռազմաճակատի համար» դրոշով:

Անցած տարին նշանավորվեց արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի նորանոր հաջողություններով, մեր ռազմական տնտեսության նոր վերելքով:

Պատերազմի չորրորդ տարում մեր գործարանները մի քանի անգամ ավելի շատ տանկ, ինքնաթիռ, հրանոթ, ականանետ, ռազմամթերք են արտադրում, քան պատերազմի սկզբում: Հետևում է մնացել գյուղատնտեսության վերականգնման առավել դժվարին ժամանակաշրջանը: Դոնի և Կուբանի արգավանդ դաշտերը երկրին վերադարձնելուց հետո, Ուկրաինայի ազատագրումից հետո, մեր գյուղատնտեսությունը արագ կազդուրվում է կրած ծանր կորուստներից: Սովետական երկաթուղային տրանսպորտը դիմացավ այնպիսի ծանրաբեռնվածության, որին հազիվ թե դիմանար ուրիշ երկրի տրանսպորտ: Այս բոլորը վկայում է, որ սովետական պետության տնտեսական հիմքը անհամեմատ ավելի կենսունակ դուրս եկավ, քան թշնամի պետությունների էկոնոմիկան:

Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի շնորհիվ ստեղծված սոցիալիստական հասարակարգը մեծ և անպարտելի ուժ տվեց մեր ժողովրդին



և մեր բանակին: Չնայած պատերազմի ծանր լծին, չնայած երկրի շատ մեծ և տնտեսապես կարևոր շրջանների ժամանակավոր օկուպացմանը գերմանացիների կողմից, սովետական պետությունը պատերազմի ընթացքում չէր կրճատում, այլ տարեց-տարի ավելացնում էր սպառազինության ու ռազմամթերքի մատակարարումը ռազմաճակատին: Այժմ Կարմիր Բանակը ո՛չ թե պակաս, այլ ավելի շատ տանկ, հրանոթ, ինքնաթիռ ունի, քան գերմանական բանակը: Ինչ վերաբերում է մեր մարտական տեխնիկայի որակին, ապա այդ տեսակետից նա շատ բանով գերազանցում է թշնամու սպառազինությունից: Ճիշտ այնպես, ինչպես Կարմիր Բանակը մեկ ընդդեմ մեկի մղվող երկարատև ու ծանր պայքարում ռազմական հաղթանակ տարավ ֆաշիստական զորքերի դեմ, սովետական թիկունքի աշխատավորները հիտլերյան Գերմանիայի ու նրա գործակիցների դեմ իրենց մենամարտում տնտեսական հաղթանակ տարան թշնամու նկատմամբ: (Բուռն ծափահարություններ):

Սովետական մարդիկ զրկում էին իրենց շատ անհրաժեշտ բանից, գիտակցաբար դիմում էին նյութական լուրջ զրկանքների, որպեսզի ավելի շատ բան տան ռազմաճակատին: Ներկայիս պատերազմի անօրինակ դժ-

վարությունները չընկճեցին, այլ է՛լ ավելի կոփեցին սովետական ժողովրդի երկաթե կամքը և տոկուն ոգին: Մեր ժողովուրդը իրավամբ նվաճեց հերոսական ժողովրդի հռչակ:

Մեր բանվոր դասակարգը իր բոլոր ուժերը նվիրաբերում է հաղթանակի գործին, անընդհատ կատարելագործում է արտադրության տեխնիկան, ավելացնում արդյունաբերական ձեռնարկությունների կարողությունը, կառուցում նորանոր ֆաբրիկաներ ու գործարաններ: Սովետական Միության բանվոր դասակարգը աշխատանքային մեծ սխրագործություն կատարեց ներկայիս պատերազմում:

Մեր ինտելիգենցիան համարձակ կերպով ընթանում է նովատորության ուղիով տեխնիկայի ու կուլտուրայի ասպարեզում, հաջողությամբ զարգացնում և առաջ է տանում ժամանակակից գիտությունը, ստեղծագործորեն կիրառում է նրա նվաճումները Կարմիր Բանակի համար սպառազինության արտադրության մեջ: Սովետական ինտելիգենցիան իր ստեղծագործ աշխատանքով անգնահատելի ավանդ ներդրեց թշնամուն ջախջախելու գործում:

Բանակը չի կարող պատերազմել և հաղթել առանց ժամանակակից սպառազինու-



թյան: Սակայն նա չի կարող նաև պատերազմել և հաղթել առանց հացի, առանց պարենամթերքի: Կարմիր Բանակը պատերազմի չորրորդ տարում, կոլխոզային գյուղացիության հոգատարության շնորհիվ, պարենամթերքի պակաս չի զգում: Կոլխոզնիկները և կոլխոզնիկուհիները բանվորներին և ինտելիգենցիային մատակարարում են պարենամթերք, իսկ արդյունաբերությանը՝ հումք, ապահովում են ռազմաճակատի համար սպառազինություն և հանդերձանք պատրաստող գործարանների ու ֆաբրիկաների նորմալ աշխատանքը: Մեր կոլխոզային գյուղացիությունը ակտիվորեն և Հայրենիքի հանդեպ իր պարտքի լիակատար գիտակցությամբ Կարմիր Բանակին օգնում է թշնամու դեմ հաղթանակ տանելու գործում:

Պատմության մեջ ընդմիշտ կմտնեն ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում աշխատանքի հիմնական ծանրությունը իրենց ուսերի վրա կրած սովետական կանանց ու մեր պանծալի երիտասարդության աշխատանքային անօրինակ սխրագործությունները: Հանուն Հայրենիքի պատվի և անկախության սովետական կանայք, պատանիներն ու աղջիկները արիություն ու հերոսություն են հանդես բերում

աշխատանքի ճակատում: Նրանք արժանի գտնվեցին իրենց հայրերին ու զավակներին, ամուսիններին ու եղբայրներին, որոնք Հայրենիքը պաշտպանում են գերմանա-ֆաշիստական ճիվաղներից:

Թիկունքում սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների, ինչպես նաև ռազմաճակատում մեր ռազմիկների մարտական անթառամ սխրագործությունների աղբյուրը սովետական ջերմ և կենսատու հայրենասիրությունն է:

Սովետական հայրենասիրության ուժն այն է, որ նրա հիմքը ո՛չ թե ռասսայական կամ նացիոնալիստական նախապաշարմունքներն են, այլ ժողովրդի խորին նվիրվածությունն ու հավատարմությունը իր սովետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորության եղբայրական համագործակցությունը: Սովետական հայրենասիրության մեջ ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային տրադիցիաները և Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը: Սովետական հայրենասիրությունը մեր երկրի բոլոր ազգերին ու ժողովուրդներին չի բաժանում, այլ ընդհակառակը համախմբում է եղբայրական միասնական ընտանիքի մեջ: Դրա մեջ պետք է տեսնել



Սովետական Միության ժողովուրդների ան-
խորտակ և ավելի ու ավելի ամրապնդվող բա-
րեկամության հիմքերը: Միևնույն ժամա-
նակ ՍՍՌՄ ժողովուրդները հարգում են ար-
տասահմանյան երկրների ժողովուրդների ի-
րավունքներն ու անկախությունը և չարունակ
պատրաստակամություն են ցույց տվել հաշտ
ու համերաշխ ապրելու հարևան պետություն-
ների հետ: Դրա մեջ պետք է տեսնել ազատա-
սեր ժողովուրդների հետ մեր պետության ա-
ճող և ամրապնդվող կապերի հիմքը:
Սովետական մարդիկ ատում են գերմա-
նական զավթիչներին ո՛չ թե նրա համար, որ
նրանք օտար ազգի մարդիկ են, այլ նրա հա-
մար, որ նրանք անթիվ-անհամար աղետներ
ու տառապանքներ բերին մեր ժողովրդին և
բոլոր ազատասեր ժողովուրդներին: Մեր ժո-
ղովրդի մեջ հնուց ի վեր ասում են. «Գայլին
սատկացնում են ոչ թե նրա համար, որ ունի
գորշ ագի, այլ նրա համար, որ կերել է մա-
քի»: (Ծիծաղ: Երկարատև ծափահարություն-
ներ):

Գերմանական ֆաշիստները իրենց համար
իդեոլոգիական զենք են դարձրել ռասսայական
մարդատյաց տեսությունը, այն հույսով, որ
գազանային նացիոնալիզմի քարոզը բարոյա-
կան-քաղաքական նախադրյալներ կստեղծի

տրկացված ժողովուրդների վրա գերմանական գավթիչների տիրապետությունը հաստատելու համար: Սակայն հիտլերականների վարած ռասսայական ատելության քաղաքականությունը գործնականում դարձավ գերմանա-ֆաշիստական պետության ներքին թուլության և արտաքին քաղաքական մեկուսացման աղբյուրը: Ռասսայական ատելության իդեոլոգիան ու քաղաքականությունը հիտլերյան ավազակային բլոկի քայքայման գործոններից մեկն են հանդիսանում: Պատահականություն չի կարելի համարել այն փաստը, որ գերմանական իմպերիալիստների դեմ ոտքի կանգնեցին ո՛չ միայն Ֆրանսիայի, Հարավսլավիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունաստանի, Բելգիայի, Դանիայի, Նորվեգիայի, Հոլանդիայի ստրկացված ժողովուրդները, այլ նաև Հիտլերի նախկին վասալները՝ իտալացիները, ռումինացիները, ֆինները, բուլղարները: Հիտլերյան կլիկը իր մարդատյաց քաղաքականությամբ Գերմանիայի դեմ հանեց աշխարհի բոլոր ժողովուրդներին, իսկ այսպես կոչված «գերմանական ընտրյալ ռասան» դարձավ ընդհանուր ատելության առարկա:

Պատերազմի ընթացքում հիտլերականնե-



րը կրեցին ո՛չ միայն ռազմական, այլև բարոյա-քաղաքական պարտություն: Մեր երկրում հաստատված բոլոր ռասսաների ու ազգերի իրավահավասարության իդեոլոգիան, ժողովուրդների բարեկամության իդեոլոգիան լիակատար հաղթանակ տարավ հիտլերականների գազանային նացիոնալիզմի և ռասսայական ատելության իդեոլոգիայի դեմ:

Այժմ, երբ Հայրենական պատերազմը գնում է դեպի հաղթական վախճանը, ամբողջ մեծությամբ երևան է գալիս սովետական ժողովրդի պատմական դերը:

Այժմ ամենքը խոստովանում են, որ սովետական ժողովուրդը իր անձնազոհ պայքարով Եվրոպայի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից: Այդ է սովետական ժողովրդի մեծ ծառայությունը մարդկության պատմության առաջ:

## 3. ՀԱԿԱԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿՈԱԼԻՑԻԱՅԻ ՃԱԿԱՏԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԵՎ ԸՆԴԼԱՅՆՈՒՄԸ: ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԸ

Անցած տարին հակագերմանական կոալիցիայի ընդհանուր գործի հաղթանակի տարի էր, հանուն որի Սովետական Միության, Մեծ Բրիտանիայի և Ամերիկայի Միացյալ Նա-

հանգների ժողովուրդները միավորվել են մարտական դաշինքի մեջ: Դա երեք հիմնական տերությունների միասնության ամրապնդման և գործողությունների համաձայնեցվածության տարի էր հիտլերյան Գերմանիայի դեմ:

Գերմանիայի դեմ համատեղ գործողությունների մասին Թեհրանի կոնֆերանսի կայացրած որոշումը և այդ որոշման փայլուն իրագործումը հակահիտլերյան կոալիցիայի ճակատի ամրապնդման ամենավառ ապացույցներից մեկն են: Պատմության մեջ քիչ կգտնվեն ընդհանուր թշնամու դեմ համատեղ գործողությունների վերաբերյալ պատերազմական մեծ օպերացիաների պլաններ, որոնք իրագործվեին այնպիսի լիակատարությամբ ու ճշտությամբ, ինչպես իրագործվեց Թեհրանի կոնֆերանսում մշակված համատեղ հարվածի պլանը Գերմանիայի դեմ: Տարակույս չի կարող լինել, որ առանց երեք մեծ տերությունների հայացքների միասնության և գործողությունների համաձայնեցվածության առկայության, Թեհրանի որոշումը չէր կարող իրականացվել այդպիսի լիակատարությամբ և ճշտությամբ: Մյուս կողմից, անտարակուսելի է նույնպես, որ Թեհրանի ո-



րոշման հաջող իրականացումը չէր կարող չըծառայել Միավորված Ազգերի ճակատի ամրապնդման գործին:

Միավորված Ազգերի ճակատի ամրության նույնքան վառ ցուցանիշ պետք է համարել պատերազմից հետո անվտանգության կազմակերպման հարցի վերաբերյալ Դումբարտոն–Օքսի կոնֆերանսի որոշումները: Խոսում են անվտանգության մի քանի հարցերում երեք տերությունների միջև եղած տարաձայնությունների մասին: Տարաձայնություններ, իհարկե, կան և դրանք դեռևս կլինեն նաև մի շարք այլ հարցերում: Տարաձայնություններ լինում են նույնիսկ միևնույն պարտիայի մարդկանց մեջ: Առավել ևս դրանք պետք է լինեն տարբեր պետությունների և տարբեր պարտիաների ներկայացուցիչների մեջ: Պետք է զարմանալ ոչ թե նրա համար, որ տարաձայնություններ կան, այլ նրա համար, որ դրանք այնքան քիչ են և որ դրանք, որպես կանոն, համարյա յուրաքանչյուր անգամ լուծվում են երեք մեծ տերությունների գործողությունների միասնության ու համաձայնեցվածության ոգով: Բանը տարաձայնությունները չեն, այլ այն, որ տարաձայնությունները դուրս չեն գալիս երեք մեծ տե-

ությունների միասնության շահերի թույլատրած շրջանակից, և, վերջին հաշվով, լուծվում են այդ միասնության շահերի գծով: Հայտնի է, որ մեզ մոտ առավել լուրջ տարաձայնություններ գոյություն ունեին երկրորդ ճակատ բաց անելու հարցում: Սակայն հայտնի է նույնպես և այն, որ այդ տարաձայնությունները վերջ ի վերջո լուծվեցին լիակատար համաձայնության ոգով: Նույնը կարելի է ասել նաև Դումբարտոն–Օքսի կոնֆերանսի տարաձայնությունների մասին: Այդ կոնֆերանսի համար բնորոշը ոչ թե այն է, որ այնտեղ երևան եկան մի քանի տարաձայնություններ, այլ այն, որ անվտանգության հարցերի իննը տասներորդը այդ կոնֆերանսում լուծվեց լիակատար միաբանության ոգով: Ահա թե ինչու, ես կարծում եմ, որ Դումբարտոն–Օքսի կոնֆերանսի որոշումները պետք է դիտել որպես հակագերմանական կոալիցիայի ճակատի ամրության վառ ցուցանիշներից մեկը:

Միավորված Ազգերի ճակատի ամրության է՛լ ավելի վառ ցուցանիշ պետք է համարել Մեծ Բրիտանիայի կառավարության ղեկավար պ–ն Ջերչիլլի և Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստր պ–ն Իդենի հետ



Մոսկվայում վերջերս կայացած բանակցությունները, որոնք տեղի ունեցան բարեկամական խորհրդության մեջ և լիակատար միաբանության ոգով:

Պատերազմի ամբողջ ընթացքում հիտլերականները Միավորված Ազգերին պառակտելու և իրար հակադրելու, նրանց մեջ կասկածամտություն և թշնամություն առաջ բերելու, փոխադարձ անվստահությամբ, իսկ եթե հաջողվի՝ նաև իրար դեմ մղվող պայքարով նրանց ռազմական ջանքերը թուլացնելու կատաղի փորձեր էին անում: Հիտլերյան քաղաքագետների նմանօրինակ ձգտումները միանգամայն հասկանալի են: Նրանց համար չկա ավելի մեծ վտանգ, քան Միավորված Ազգերի միասնությունը հիտլերյան իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, և նրանց համար չէր կարող լինել ռազմա–քաղաքական ավելի մեծ հաջողություն, քան դաշնակից տերությունների պառակտումը՝ ընդհանուր թշնամու դեմ նրանց մղած պայքարում: Հայտնի է, սակայն, թե որքան ապարդյուն դուրս եկան մեծ տերությունների դաշինքը քայքայելու ուղղությամբ ֆաշիստական քաղաքագետների ճիգերը: Այդ նշանակում է, որ ՍՍՌՄ-ի, Մեծ Բրիտանիայի և ԱՄՆ-ի

դաշինքի հիմքում դրված են ոչ թե պատահական ու անցողիկ մոտիվներ, այլ կենսականորեն կարևոր և տևական շահեր:

Կարելի է չտարակուսել, որ մեծ դեմոկրատական տերությունների մարտական դաշինքը դիմացավ պատերազմի ավելի քան երեք տարվա փորձություններին և եթե նա ամրապնդված է իրենց ազատության ու պատվի պաշտպանության համար ոտքի ելած ժողովուրդների արյունով, ապա առավել ևս այդ դաշինքը կդիմանա պատերազմի եզրափակիչ ստադիայի փորձություններին: (Երկարատև ծափահարություններ):

Անցած տարին, սակայն, ո՛չ միայն դաշնակից տերությունների հակագերմանական ճակատի ամրապնդման տարի էր, այլև այդ ճակատի ընդլայնման տարի: Չի կարելի պատահականություն համարել այն փաստը, որ Իտալիայից հետո պատերազմից դուրս բերվեցին Գերմանիայի նաև մյուս դաշնակիցները՝ Ֆինլանդիան, Ռումինիան, Բուլղարիան: Պետք է նշել, որ այդ պետությունները ոչ միայն դուրս եկան պատերազմից, այլև հարաբերությունները խզեցին Գերմանիայի հետ ու պատերազմ հայտարարեցին նրան, այդպիսով հարելով Միավորված Ազգերի ճակատին:



Դա, անտարակույս, նշանակում է Միավորված Ազգերի ճակատի ընդլայնում հիտլերյան Գերմանիայի դեմ: Տարակույս չի կարող լինել, որ Եվրոպայում Գերմանիայի վերջին դաշնակից Հունգարիան նույնպես շարքից դուրս կբերվի մոտակա ժամանակում: Այդ կնշանակի հիտլերյան Գերմանիայի լիակատար մեկուսացումը Եվրոպայում և նրա կրախի անխուսափելիությունը:

Միավորված Ազգերը կանգնած են հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի հաղթական ավարտման շեմքին:

Գերմանիայի դեմ մղվող պատերազմը Միավորված Ազգերը կշահեն. այդ մասին այժմ արդեն չի կարող ոչ մի տարակույս լինել:

Գերմանիայի դեմ պատերազմը շահելը նշանակում է պատմական մեծ գործ կատարել: Սակայն պատերազմ շահելը դեռևս չի նշանակում ժողովուրդների համար հաստատուն խաղաղություն և հուսալի անվտանգություն ապահովել ապագայում: Խնդիրը ո՛չ միայն պատերազմը շահելն է, այլև նոր ագրեսիայի և նոր պատերազմի առաջացումն անհնարին դարձնելը եթե ոչ ընդմիշտ, ապա, գոնե, տևական ժամանակամիջոցի ընթացքում: Գերմանիայի պարտությունից հետո,

նա, իհարկե, կզինաթափվի ինչպես տնտեսական, այնպես էլ ռազմա-քաղաքական տեսակետից: Սակայն միամտություն կլիներ կարծել, որ նա չի փորձի վերածնել իր ուժը և ծավալել նոր ագրեսիա: Ամենքին հայտնի է, որ գերմանական պարագլուխները արդեն այժմ պատրաստվում են նոր պատերազմի: Պատմությունը ցույց է տալիս, որ բավական է 20—30 տարի կարճատև ժամանակաշրջան, որպեսզի Գերմանիան կազդուրվի պարտությունից և վերականգնի իր ուժը: Ի՞նչ միջոցներ կան կանխելու համար նոր ագրեսիան Գերմանիայի կողմից, իսկ եթե պատերազմը, այնուամենայնիվ, առաջանա՝ այն խեղդելու հենց սկզբում և թույլ չտալու, որ ծավալվի ու դառնա մեծ պատերազմ:

Այս հարցը առավել ևս տեղին է, քանի, որ, ինչպես ցույց է տալիս պատմությունը, ագրեսիվ ազգերը, որպես հարձակվող ազգեր, սովորաբար ավելի նախապատրաստված են լինում նոր պատերազմի համար, քան խաղաղասեր ազգերը, որոնք չհագրգռված լինելով նոր պատերազմով, սովորաբար ուշանում են պատերազմի նախապատրաստվելուց: Փաստ է, որ ներկայիս պատերազմում ագրեսիվ ազգերը դեռևս պատերազմի սկզբին ար-

դեն ունեին պատրաստի ներխուժման բանակ,
այն ժամանակ, երբ խաղաղասեր ազգերը
չունեին նույնիսկ մոբիլիզացիա կատա-
րելու համար միանգամայն բավարար պաշտ-
պանող բանակ: Չի կարելի պատահակա-
նություն համարել այնպիսի անախորժ փաս-
տերը, ինչպես Պիրլ-Հարբորի «միջադեպը»,
Ֆիլիպյան և մյուս կղզիների կորուստը Մեծ
օվկիանոսում, Հոնկոնգի ու Սինգապուրի կո-
րուստը, երբ Ճապոնիան, որպես ագրեսիվ
ազգ, ավելի պատրաստ դուրս եկավ պատե-
րազմի համար, քան Մեծ Բրիտանիան ու Ա-
մերիկայի Միացյալ Նահանգները, որոնք վա-
րում էին խաղաղասիրական քաղաքականու-
թյուն: Չի կարելի նույնպես պատահականու-
թյուն համարել այնպիսի անախորժ փաստ,
ինչպես Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մերձ-
բալթիկայի կորուստը պատերազմի առաջին
իսկ տարում, երբ Գերմանիան, որպես ագրե-
սիվ ազգ, ավելի պատրաստ դուրս եկավ պա-
տերազմի համար, քան խաղաղասեր Սովետա-
կան Միությունը: Միամտություն կլիներ
այդ փաստերը բացատրել ճապոնացիների և
գերմանացիների անձնական հատկություննե-
րով, անգլիացիների, ամերիկացիների, ռուս-
ների նկատմամբ նրանց գերազանցությամբ,

նրանց չրջահայեցողությամբ և այլն: Բանն այստեղ անձնական հատկությունները չեն, այլ այն, որ նոր պատերազմով շահագրգռված ագրեսիվ ազգերը, որպես երկարատև ժամանակամիջոցում պատերազմի համար նախապատրաստվող և այդ բանի համար ուժեր կուտակող ազգեր, սովորաբար լինում են, և պետք է լինեն, պատերազմի համար ավելի նախապատրաստված, քան նոր պատերազմով չշահագրգռված խաղաղասեր ազգերը: Դա բնական է ու հասկանալի: Դա, եթե ուզում եք, պատմական օրինաչափություն է, որը վտանգավոր կլիներ հաշվի չառնել:

Հետևաբար, չի կարելի ժխտել այն, որ ապագայում խաղաղասեր ազգերը կարող են նորից հանկարծակիի բերվել ագրեսիայից, եթե, իհարկե, նրանք արդեն այժմ իսկ չմշակեն ագրեսիան կանխելու ընդունակ հատուկ միջոցառումներ:

Եվ այսպես, ի՞նչ միջոցներ կան Գերմանիայի նոր ագրեսիան կանխելու համար, իսկ եթե պատերազմը, այնուամենայնիվ, առաջանա, այն հենց սկզբում խեղդելու և թույլ չտալու համար, որ ծավալվի ու դառնա մեծ պատերազմ:

Դրա համար ագրեսիվ ազգերին լիովին



զինաթափելուց բացի, գոյություն ունի միայն մեկ միջոց՝ խաղաղասեր երկրների ներկայացուցիչներից ստեղծել խաղաղության պաշտպանման և անվտանգության ապահովման հատուկ կազմակերպություն, այդ կազմակերպության ղեկավար օրգանի տրամադրության տակ դնել ագրեսիան կանխելու համար պահանջվող զինված ուժերի նվազագույն անհրաժեշտ քանակը, և այդ կազմակերպությանը պարտավորեցնել, անհրաժեշտության դեպքում, անհապաղ գործի դնել այդ զինված ուժերը ագրեսիան կանխելու կամ լիկվիդացնելու և ագրեսիայի մեղավորներին պատժելու համար:

Դա չպետք է լինի տխրահռչակ Ազգերի Լիգայի կրկնությունը, որը չուներ ո՛չ իրավունք, ո՛չ միջոցներ ագրեսիան կանխելու համար: Դա կլինի նոր, հատուկ, լիիրավ միջազգային կազմակերպություն, որն իր տրամադրության տակ կունենա անհրաժեշտ ամեն ինչ խաղաղությունը պաշտպանելու և նոր ագրեսիան կանխելու համար:

Կարելի՞ է արդյոք հույս ունենալ, որ այդ միջազգային կազմակերպության գործողությունները կլինեն բավականաչափ էֆեկտավոր: Դրանք էֆեկտավոր կլինեն, եթե

հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի գլխավոր ծանրությունը իրենց ուսերի վրա կրած մեծ տերությունները այսուհետև ևս գործեն միաբանության և համաձայնության ոգով: Դրանք էֆեկտավոր չեն լինի, եթե խախտվի այդ անհրաժեշտ պայմանը:

***

Ընկերնե՛ր:

Սովետական ժողովուրդը և Կարմիր Բանակը հաջողությամբ իրագործում են Հայրենական պատերազմի ընթացքում իրենց առաջ կանգնած խնդիրները: Կարմիր Բանակը արժանավայել կերպով կատարեց իր հայրենասիրական պարտքը և մեր Հայրենիքը ազատագրեց թշնամուց: Այսուհետև և ընդմիշտ մեր հողը ազատ է հիտլերյան աղտեղությունից: Այժմ Կարմիր Բանակին մնում է միայն նրա վերջին եզրափակիչ միսիան՝ մեր դաշնակիցների բանակների հետ միասին ավարտել գերմանա-ֆաշիստական բանակի ջախջախման գործը, ոչնչացնել ֆաշիստական գազանին նրա սեփական որջում և Բեռլինի վրա բարձրացնել հաղթանակի դրոշը: (Բուռն, երկարատև ծափահարություններ): Հիմք կա հուսալու, որ Կարմիր Բանակը այդ խնդիրը կկա-



տարի ոչ հեռու ապագայում: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Կեցցե՛ մեր հաղթական Կարմիր Բանակը: (Ծափահարություններ):

Կեցցե՛ մեր պանծալի Ռազմա-Ծովային Նավատորմը: (Ծափահարություններ):

Կեցցե՛ սովետական հզոր ժողովուրդը: (Ծափահարություններ):

Կեցցե՛ մեր մեծ Հայրենիքը: (Բուռն ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում):

Մա՛հ գերմանա-ֆաշիստական զավթիչներին: (Բուռն ծափահարություններ, որոնք վերածվում են երկարատև օվացիայի: Բացականչություններ՝ «Կեցցե՛ ընկեր Ստալինը»):

---

# ՀՐԱՄԱՆ

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԻ

*7 ՆՈՅԵՄԲԵՐԻ 1944 ԹՎԻ № 220 ՔԱՂ. ՄՈՍԿՎԱ*

Ընկեր կարմիրբանակայիններ և կարմիրնավատորմայիններ, սերժանտներ, սպաներ և գեներալներ, Սովետական Միության աշխատավորներ, բռնությամբ Գերմանիա՝ ֆաշիստական տաժանակրության քշված եղբայրներ և քույրեր:

Սովետական կառավարության և մեր բոլշևիկյան պարտիայի անունից ողջունում և շնորհավորում եմ Ձեզ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի առթիվ:

Հոկտեմբերյան Ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձը մենք տոնում ենք մեր Հայրենիքի թշնամիների դեմ Կարմիր Բանակի ձեռք բերած վճռական հաղթանակների պայմաններում: Կարմիր Բանակի և սովետական ժողովրդի հերոսական ջանքերով մեր հողը մաքրված է գերմանա-ֆաշիստական զավթիչներից:

Ընթացիկ տարում սովետական զորքերը անընդհատ մեկը մյուսից ավելի ուժգին հարվածներ էին տեղում թշնամու գլխին: 1944 թվի ձմեռը Կարմիր Բանակը նշանավոր հաղթանակներ ձեռք բերեց Աջափնյա Ուկրաինայում և ջախջախեց գերմանացիներին Լենինգրադի մոտ: Այս տարի գարնանը Կարմիր Բա-



նակը գերմանացիներից մաքրեց Ղրիմը, 1944 թվի ամառը մեր զորքերը հիտլերյան բանակին պատճառեցին խոշորագույն պարտություններ, որոնք արմատական փոփոխության ենթարկեցին իրադրությունը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի ճակատում: Կարմիր Բանակը խորտակեց թշնամու երկար պաշտպանությունը Կարելական պարանոցում, ինչպես նաև Լադոգա ու Օնեգա լճերի միջև և Ֆինլանդիային դուրս բերեց հիտլերյան ավազակային բլոկից: Բելոռուսական հողերում տեղի ունեցած պատմական ճակատամարտում Կարմիր Բանակը գլխովին ջախջախեց գերմանական զորքերի երեք բանակից բաղկացած կենտրոնական խմբավորումը, ընդորում կոտորելով և գերելով 540 հազար գերմանական զինվոր ու սպա: Հարավում տեղի ունեցած ճակատամարտում Կարմիր Բանակը շրջապատեց և ամբողջովին ոչնչացրեց գերմանական զորքերի երկու բանակից բաղկացած խմբավորումը: Այդ ժամանակ սովետական զորքերը ոչնչացրին և գերի վերցրին գերմանական ավելի քան 250 հազար զինվոր ու սպա: Կարմիր Բանակը ջախջախեց գերմանացիներին Ռումինիայում, նրանց դուրս շպրտեց Բուլղարիայից, խփում է գերմանացիներին Հունգարիայի տերիտորիայում: Մեր զորքերը ոչնչացրին հիտլերյան բանակի մեծաքանակ խմբավորումը: 1944 թվի ամառվա կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը մարտերով անցավ Քիշնևից մինչև Բելգրադ՝ ավելի քան 900 կիլոմետր, Ժլոբինից մինչև Վարշավա՝ ավելի քան 600 կիլոմետր, Վիտեբսկից մինչև Տիլզիտ՝ 550 կիլոմետր: Պատերազմը այժմ փոխադրվել է ֆաշիստական Գերմանիայի տերիտորիան:

Մարտերի ընթացքում Կարմիր Բանակը գերմանա-

փաշիստական զավթիչներին վռնդեց Սովետական Ուկրաինայի և Բելոռուսիայի, Կարելա-Ֆիննական, Մոլդավական, Էստոնական, Լատվիական և Լիտվական սովետական ռեսպուբլիկաների ամբողջ տերիտորիայից: Տապալված է փաշիստական եռամյա լուծը գերմանացիների կողմից ժամանակավորապես զավթված մեր եղբայրական սովետական ռեսպուբլիկաների հողերում: Կարմիր Բանակը ազատություն վերադարձրեց սովետական տասնյակ միլիոնավոր մարդկանց: Հիտլերյան հրոսակախմբերի կողմից 1941 թվի հունիսի 22-ին ուխտադրժորեն խախտված սովետական պետական սահմանը վերականգնված է ամբողջ երկայնությամբ՝ Սև ծովից մինչև Բարենցի ծովը:

Այդպիսով, անցած տարին հանդիսացավ սովետական հողը գերմանա-փաշիստական զավթիչներից լիովին ազատագրելու տարի:

Ավարտելով հարազատ հողի ազատագրումը հիտլերյան աղտեղությունից, Կարմիր Բանակը այժմ օգնում է Լեհաստանի, Հարավսլավիայի, Չեխոսլովակիայի ժողովուրդներին՝ փշրելու փաշիստական ստրկության շղթաները և վերականգնելու իրենց ազատությունն ու անկախությունը:

Անցած տարվա ձմեռային և ամառային ճակատամարտերում Կարմիր Բանակը ցույց տվեց զինվորական հարանուն վարպետություն: Կարմիր Բանակի մարտիկները հմտորեն խորտակում էին հակառակորդի ամրացված գոտիները, որոնցից հետապնդում էին, շրջապատում և ոչնչացնում թշնամուն: Հարձակողական մարտերում դրսևորվեց սովետական զորքերի բոլոր տեսակների ճշտորոշ փոխգործողությունը, մանևրելու բարձր արվեստը: Սովետական ռազմիկները կոփվեցին ճակատամարտերում, սովորեցին ջախջախել և հաղ-



թել թշնամուն: Կարմիր Բանակը անեց դարձավ մի ահեղ ուժ և թշնամուց գերազանցում է իր զինվորական հմտությամբ ու մարտական տեխնիկայով:

Կարմիր Բանակի ուժերը բազմապատիկ ավելանում են սովետական թիկունքի պանծալի աշխատանքով: Բանվորները, կոլխոզնիկները, ինտելիգենցիան պատվով են կատարում իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ, հերոսաբար հաղթահարում պատերազմի ժամանակվա դժվարությունները, անխափան սպառազինություն, հրանյութեր և պարենամթերք են մատակարարում Կարմիր Բանակին: Սովետական տնտեսությունը անընդհատ ավելացնում է իր ուժերը և հարանուն օգնություն է ցույց տալիս ռազմաճակատին:

Կարմիր Բանակը և սովետական ժողովուրդը պատրաստ են նոր կործանիչ հարվածներ հասցնելու թշնամուն: Հիտլերյան արյունալի ռեժիմի օրերը հաշված են: Կարմիր Բանակի հարվածների տակ վերջնականապես քայքայվեց փաշիստական բլոկը. հիտլերյան Գերմանիան զրկվեց իր դաշնակիցների մեծ մասից: Արևմտյան Եվրոպայում մեր դաշնակիցների բանակների վարպետորեն կատարած խոշոր գործողությունները հանգեցին գերմանական զորքերի ջախջախմանը Ֆրանսիայում ու Բելգիայում և այդ երկրների ազատագրմանը փաշիստական օկուպացիայից: Դաշնակից զորքերն անցան Գերմանիայի արևմտյան սահմանը: Կարմիր Բանակի և անգլո-ամերիկյան զորքերի կողմից հիտլերյան Գերմանիային հասցված համատեղ հարվածները մոտեցրին պատերազմի հաղթական վախճանի ժամը: Ավարտվում է հիտլերյան Գերմանիայի շըրջապատումը: Ֆաշիստական գազանի որջը շրջապատված է ամեն կողմից և թշնամու ոչ մի խորամանկու-

թյուն չի փրկի նրան անխուսափելի լիակատար ջախջախումից։

Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների բանակները ելման դիրքեր են գրավել՝ Գերմանիայի կենսական կենտրոնների վրա վճռական հարձակում գործելու համար։

Այժմ մեր խնդիրն է՝ Միավորված Ազգերի բանակների սրընթաց գրոհով ամենակարճ ժամանակամիջոցում խորտակել հիտլերյան Գերմանիան։

Ընկեր կարմիրբանակայիննե՛ր և կարմիրնավատորմայիննե՛ր, սերժանտնե՛ր, սպանե՛ր ու գեներալնե՛ր. Սովետական Միության աշխատավորնե՛ր։

Հայրենական Մեծ պատերազմում մենք պաշտպանեցինք մեր Հայրենիքը զավթիչներից, վերջնականապես լիկվիդացրինք ֆաշիստական ճիվաղների կողմից ՍՍՌՄ ժողովուրդներին ստրկացնելու սպառնալիքը և այժմ գտնվում ենք լիակատար հաղթանակի նախօրյակին։

Ի նշանավորումն ռազմաճակատում Կարմիր Բանակի տարած պատմական հաղթանակների և թիկունքում բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի ձեռք բերած մեծ հաջողությունների, ի պատիվ սովետական հողի ազատագրմանը գերմանա-ֆաշիստական զավթիչներից, ՀՐԱՄԱՅՈՒՄ ԵՄ.

Այսօր, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 27-րդ տարեդարձի օրը ժամը 20-ին սալյուտ տալ Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Մինսկում, Պետրոզավոդսկում, Տալլինում, Ռիգայում,



Վիլնյուսում, Քիշնևում, Թբիլիսիում, Սևաստոպոլում, Լվովում հրետանային քսանչորս համազարկով։

Կեցցե՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիայի 27-րդ տարեդարձը։

Կեցցե՛ մեր ազատ Սովետական Հայրենիքը։

Կեցցե՛ մեր Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։

Կեցցե՛ սովետական մեծ ժողովուրդը։

Հավե՛րժ փառք մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մղվող պայքարում զոհված հերոսներին։

Մա՛հ գերմանական զավթիչներին։

ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ՝
ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ Ի. ՍՏԱԼԻՆ

---

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ), ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

*ՎՖ 01827* *Պատ. 1046, տիրաժ 5000*

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից թերթերի
և ամսագրերի տպարան, Երևան